ներով անձեր՝ քաղաքային բնակչութենէն : Դժուար չէ հասկնալ թէ հակակշիռ մը չէ այս, այլ խեղկատակութիւն, միջոց մը՝ ի դերեւ հանելու ժողովուրդներու խաղաղասիրական տենչերը : Հասկնալի է թէ այդպիսի «հակակշիռ» մը չի կրնար գոհացնել խաղաղասէր ժողովուրդները, որոնք կը պահանջեն արգիլել հիւլէական զէնքը եւ ընդհատել անոր շինութիւնը » :

### Ի՞ՆՉ Կ'ԸՆԵՆ ԱՄԵՐԻԿԱՑԻՆԵՐԸ

Այդ տեսակցութեան հրատարակութենէն անմիջապէս վերջը, Մ. Նահանգներու երեսփոխաններէն Ճէյմս Ջանգ յայտարարեց.

— Ճիշդ ու ճիշդ Սթալինեան յայտարարութիւն մըն է : Խ. Միութիւնը ինքն է որ պատ կը քաշէ միջազգային հակակշռի որեւէ փորձի առջեւ: Եթէ Սովետները դոյզն յօժարութիւնը ունենային, թերեւս կարենայինք համաձայնութեան մը յանգիլ :

Ծերակուտական Թոմ Քոնըլի, արտաքին գործերու յանձնաժողովին նախագահը, դիտել տուաւ .

— Սթալինի յայտարարութիւնը կը հաստատէ այն դիրքին որով Խ. Միութիւնը կ'ընդդիմանայ միջազգային հակակշիռ հաստատելու փորձերուն:

Ուրիշ երեսփոխան մը, Ճէքսըն, կը կարծէ թէ «Մ. Նահանգները կրնան պահել իրենց գերակշռութիւնը հիւլէական զինարշաւին մէջ»: Քաղաքային պաշտպանութեան նախագահն ալ կ'ըսէ թէ Խ. Միութիւնը «ի վիճակի է զարնելու ամէն ամերիկեան քաղաք»:

× Չըրչիլ ճառ մը խօսելով, ըսաւ որ եթէ նորէն վարչապետ ընտրուի, պիտի ջանայ ժողով մը սարքել Սթալինի եւ Թրումընի հետ, խաղաղութիւնը ապահովելու համար :

## Գերմանիոյ միացման խնդիրը

Ինչպէս գրած էինք, շաբաթ օր դէմ դիմաց ճառեր խօսեցան արեւմտեան եւ արեւելեան Գերմանիաներու վարչապետները, երկուքն ալ Պերլինի մէջ:

Տօքթ. Ատընաուըր նախ բացատրեց թէ կառավարութիւնը կը ջանայ վերահաստատել Գերմանիոյ կատարեալ միութիւնը : Յետոյ դիտել տուաւ թէ յաղթական պետութիւնները հանդիսաւորապէս խոստացած էին որ եւ է հող չկցել Գերմանիայէն եւ Գերմանիոյ միութիւնը վերահաստատել ժողովրդավար հիմերու վրայ : «Այդ յանձնառութիւնները քանիցս հաստատուեցան վերջերս: Կը սպասենք որ Խ. Միութիւնը յարգէ իր տուած հանդիսաւոր խօսքը, Հողային կցումներ չկատարել եւ վերահաստատել Գերմանիոյ միութիւնը ժողովրդավար սկզբունքներու վրայ »:

Մերժելով չէզոքացման տեսակէտը, վարչապետը շեշտեց թէ ամբողջ Գերմանիան պէտք է միանայ Եւրոպայի: Յետոյ հերքեց այն պնդումը թէ Գերմանները պատերազմ կ'ուզեն: «Գերմանիան փորձով գիտէ պատերազմին աղետալի հետեւանքները եւ գիտէ նաեւ որ նոր աշխարհամարտ մը շատ աւելի ահարկու պիտի ըլլայ: Արեւմտեան պետութեանց հետ կատարուած բանակցութիւնները ուրիշ նպատակ չունին եթէ ոչ երաշխաւորել խաղաղութիւնը, միացեալ Եւրոպա մը կազմելով Գերմանիոյ մասնակցութեամբ » :

ՏՈՔԹ. Ատընաուըր յետոյ պատասխանեց արեւելեան Գերմանիոյ վարչապետին՝ Պ. Կրոթեվոլի վերջին կոչերուն :

Այս վերջինն ալ բանախօսելով երեք ժամ վերջը, ծաղկեց Տօքթ. Ատընաուըրի «անմիտ ծրագիրը որով ամերիկացի աշխարհակալներուն տրամադրութեան տակ պիտի դնէ տասը գերման զօրաբաժիններ »: Յետոյ ըսաւ թէ «առանց Խ. Միութեան Գերմանիան ոչ հանգիստ պիտի վայելէ, ոչ ալ խաղաղութիւն: Արեւմտեան ճակատը փորձեց կուսախնձոր դարձնել Օտէր-Նայսէ սահմանագիծը, մեր երկու ժողովուրդներուն միջեւ : Փորձեց, սակայն չյաջողեցաւ: Օտէրը սահմանագլուխ մը չէ այսօր, այլ կապ մը » :

Եզրակացնելով, Պ. Կրոթեվոլ ըսաւ թէ իրենց բացորոշ պատասխանը պիտի տան Հոկտ. 10ին, ազգ. ժողովի բացառիկ նիստին մէջ, «խափանելով միտքերը պղտորելու փորձերը »: Այս առթիւ յայտնեց թէ ընդհ. ներում պիտի ստանան 20.000 բանտարկեալներ: Արեւելեան Գերմանիոյ նախագահը, Պ. Փիք եւս հաստատեց այս լուրը, առանց ճշդելու մանրամասնութիւնները :

ՆԱՀԱՆԳԱՅԻՆ ԸՆՏՐՈՒԹԵԱՆՑ Ա. մասը տեղի ունեցաւ կիրակի օր: 1480 շրջաններու մէջ ընտրուած էին 38 համայնավարներ (կորուստ՝ 17), ընկերվարականները՝ 126 (կորուստ՝ 49) , ձախակողմեան դիմադրականներ 234 (շահ՝ 11) , անկախներ եւ չափաւորներ՝ 279 (շահ՝ 42) եւն.: Ընտրեալներուն մէջ կան վարչապետը եւ ուրիշ նախարարներ եւ երեսփոխաններ, մեծ մասով՝ չափաւոր կամ աջակողմեան: Յաջորդ կիրակի պիտի կատարուին վերջին ընտրութիւնները :

ՁԵՐԲԱԿԱԼՈՒԵՑԱՒ ծանօթ լրագրող Անրի Քորայ, այլ անուամբ՝ Քուշարուքի, երկու ամբաստանութիւններով.— 1. Գաղտնի յարաբերութիւններ ունեցած է օտար պետութեան մը հետ, ի վնաս Ֆրանսայի զինուորական եւ դիւանագիտական կացութեան. —2. Դրամ ստացած է օտար պետութենէ մը՝ քարոզութիւններ կատարելու համար :

## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ
### Փարիզի մէջ
ՀՈԿՏԵՄԲԵՐ 28ԻՆ

ԼԻՈՆԻ ՄԷՋ
20 Հոկտ. Շաբաթ իրիկուն, Սալ Ռամոյի մէջ
ՊԱՆԵԼՕ ՔԱՇԱՆԻ ՄԷՋ
Հոկտեմբեր 28ին :
ԻՍԻԻ մէջ Հոկտ. 27ին :

Այս շաբթու լոյս կը տեսնէ

## Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԻՒՆԸ ԵՒՐՈՊԱՅԻ ՄԷՋ
(60ԱՄԵԱԿԻ ԱՌԹԻՒ)
ՀՐԱՏ. Հ. Յ. Դ. ԱՐԵՒՄՏ. ԵՒՐՈՊԱՅԻ ԿԵԴՐ. ԿՈՄԻՏԷԻ

ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. կոմիտէի վիճակախաղէն շահած են հետեւեալ թիւերը.— 215, 194, 553, 88 414, 528, 232: Ստանալու համար դիմել ընկեր Կ. Սապունճեանի :

ԴԱՇՆԱԿԱՀԱՐՈՒՀԻ
ՕՐ. ՎԵՐՈՆԻԿ ՃԻՆՃԵԱՆԻ
Նուագահանդէսը Նոյեմբեր 24ին, ժամը 9ին, Conservatoireի սրահը:
Մանրամասնութիւնները յաջորդով :




Le Gérant : A. NERCESSIAN
Imp. DER AGOPIAN, 17, Rue Damesme, Paris (13)


## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԱԼՖՈՐՎԻԼ.— Հ. Յ. Դ. Ս. Մինասեան ենթակոմիտէին ընդհ. ժողովը այս հինգշաբթի ժամը 9ին, սովորական հաւաքատեղին :

ԱՂԲԻՒՐ ՍԵՐՈԲ ԵՒ ԵՕԹՆԵՂԲԱՅՐԵԱՆ խումբի ընդհ. ժողովը՝ այս շաբաթ ժամը 20.30ին, սովորական հաւաքատեղին: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է :

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ.— Ուրֆայի հերոսամարտի տարեդարձը՝ Դեկտ. 30ին :

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Շրջ. վարչութեան թէյասեղանը Նոյեմբեր 20ի շաբաթ երեկոյեան :

ՆԱՄԱԿԱՏՈՒՓ.— «Յուսաբեր»ի վարչութեան. — Ջենք ստացած Սեպտ. 8էն.16, Սեպտ. 24էն 28 (օդանաւով) :

## Շ. Գարահիսարի Հերոսամարտին
36ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

14 Հոկտ. կիրակի օր ժամը 3ին, Cercle Militaireի սրահին մէջ:

Նախաձեռնութեամբ Սեբաստիոյ Մուրատ Ուսումնասիրացի եւ Շ. Գարահիսարի Ռազմիկ Միութեան :

Կը նախագահէ Պ. Ս. ՏԷՕՎԼԷԹԵԱՆ

Կը խօսին Պ. Պ. ԽԱՉԻԿ ՄԿՐՏԻՉԵԱՆ, ԱՆՈՒՇԱՒԱՆ ԳԱԲԻԿԵԱՆ, Յ. ՊՕՂՈՍԵԱՆ եւ Վ. ՉԷՅԹՈՒՆՑԵԱՆ :

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին Օր. Վ. ՃԻՆՃԵԱՆ (դաշնակ), Պ. D. BONNEKENS (ջութակ), Օր. G. AMKALAY (դաշնակ), Փարիզի երաժշտանոցէն), Օր. ԿԱՌՎԱՐԵՆՑ (երգ), Պ. Ա. ՔԻՒՓԷԼԵԱՆ (երգ), Պ. Ա. ԳՄԲԷԹԵԱՆ եւ Տիկ. ՎԱՐՊԵՏԵԱՆ (արտասանութիւն) :

Տոմսերը ապահովել Հ. Սամուէլի, Մ. Պարսամեանի եւ Հ. Բալուեանի գրատուններէն եւ Փարիզի եկեղեցւոյ քարտուղարութենէն :

Métro Place St. Augustin

ԾԱԽՈՒ է գրի մեքենայ մը: Հեռաձայնել OPEra 37-62:

